Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 13 ՀՈՒԼԻՍ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


Նյութեր զրույցների համար

Պ. ԵՖԻՄՈՎ.— Եվրոպայի ժողովուրդների պայքարը Գերմանիայի վերազինման դեմ . . 1

Ֆիզկուլտուրնիկի համամիութենական օրը 12

Ագիտացիոն աշխատանքի փորձից

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ.— Մի ագիտկոլեկտիվի աշխատանքի մասին . . . . . . . . . . . 20

Առաջավորների փորձից

Ա. ՍԱՐԴՍՅԱՆ.— Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու . . 27

Օգտագործիր զրույցի ժամանակ

Ռեսպուբլիկայի ժողովրդական լուսավորության անշեղ վերելքը (թվեր ու փաստեր) . . . 32

Պատասխան ընթերցողների հարցերին

Գվատեմալա . . . . . . . . . . . . 38

Օգնություն ագիտատորներին

Թեմաներ և գրականություն ագիտատորների զրույցների համար . . . . . . . . 45



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 3—52—78։




# ԵՎՐՈՊԱՅԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՎԵՐԱԶԻՆՄԱՆ ԴԵՄ

Պ. ԵՖԻՄՈՎ

ԱՄՆ-ի ռեակցիոն կառավարողները Արևմտյան Գերմանիայում արագորեն վերածնում են միլիտարիզմը, որը մի գործիք կլինի նրանց ձեռքին իրականացնելու իրենց ագրեսիվ նպատակները։ 1952 թվականի մայիսին ԱՄՆ-ի ճնշման տակ Ֆրանսիայի, Իտալիայի, Արևմտյան Գերմանիայի, Բելգիայի, Հոլանդիայի և Լյուքսեմբուրգի կառավարությունները ստորագրեցին այսպես կոչված փարիզյան պայմանագիրը, որը նախատեսում էր ստեղծել «Եվրոպայի պաշտպանական միավորում»։ Դրա էությունն այն է, որ ստեղծվում է «Եվրոպական բանակ», որը իր մեջ ընդգրկում է այդ վեց երկրների զինված ուժերը, այդ թվում Արևմտյան Գերմանիայի 12 դիվիզիա։

Այսպիսով հակառակ մեծ տերությունների միջև կայացված համաձայնության, Արև-

մըտյան Գերմանիայում ռևանշիստական
բանակի վերականգնման կուրս վերցվեց։
«Միավորում» ստեղծելու դեպքում արևմտա-
գերմանական միլիտարիստները նրանում
կստանային իշխող դիրքեր։

Նախկին հիտլերյան գեներալները կարող
էին ղեկավարել ոչ միայն վերականգնված
արևմտա-գերմանական դիվիզիաները, այլև
Իտալիայի, Ֆրանսիայի, Բելգիայի, Հոլան-
դիայի և Լյուքսեմբուրգի բանակները։ Արև-
մըտյան Գերմանիան կստանար այն, ինչին
չկարողացավ հասնել պատերազմի ժամա-
նակ. նա գերիշխանություն կստանար Արև-
մըտյան Եվրոպայում և կարող էր ցանկացած
ժամանակ իր ամերիկյան հովանավորողնե-
րի թելադրանքով ռևանշիստական պատե-
րազմ սկսել։

Այդ նախագծերի հետ, իհարկե, չէին կա-
րող հաշտվել ոչ միայն «Եվրոպական պաշտ-
պանական միավորմանը» մասնակից երկրնե-
րի ժողովուրդները, որոնց Փարիզյան պայ-
մանագիրը վեր է ածում Արևմտյան Գերմա-
նիայի կամակատարների և զրկում է նրանց
իրենց ազգային բանակը տնօրինելու իրա-
վունքից։ «Եվրոպական բանակ» ստեղծելու
դեմ հանդես եկան բոլոր ժողովուրդները, գեր-



մանական միլիտարիզմի վերականգնման
մեջ տեսնելով սպառնալիք խաղաղությանը և
անվտանգությանը։ Պատմական փորձը ցույց
է տալիս, որ Արևմտյան Եվրոպայում գեր-
մանական միլիտարիզմի կողմից սկսած
պատերազմներր 1914—1918 թ. թ. և 1939—
1945 թ. թ. արագորեն վերածվեցին համաշ-
խարհային պատերազմի։

Ժողովրդական ընդդիմադրությունը անհաղ-
թահարելի պատնեշ դարձավ ամերիկյան
ագրեսիվ մտադրությունները իրականացնե-
լու ճանապարհին։ Արդեն երկու տարի է
անցել Փարիզում «Եվրոպական պաշտպանա-
կան միավորման» մասին պայմանագիր կըն-
քելուց, սակայն այն մինչև այժմ ուժի մեջ
չի մտել։ Չնայած ԱՄՆ-ի կառավարող շըր-
ջանների կողմից կատարվող սպառնալիքնե-
րին ու շանտաժին, այդ պայմանագիրը վավե-
րացվել է միայն Լյուքսեմբուրգի, Հոլանդիա-
յի, Բելգիայի և... Արևմտյան Գերմանիայի
պառլամենտների կողմից։ Բնորոշ է այն, որ
Բելգիայում իշխանությունը գլխավորող սո-
ցիալ-քրիստոնեական պարտիան, որը պառ-
լամենտում ձայների մեծամասնություն ու-
ներ, անհապաղ հատուցեց նրանով, որ Փա-
րիզյան պայմանագրի վավերացման նախա-
ձեռնողը եղավ։ Այս տարվա ապրիլին տեղի

ունեցած պառլամենտական ընտրություններին նա պարտություն կրեց և տեղը զիջեց սոցիալիստներին, որոնք ստիպված էին ներքևից եկող ճնշման տակ հանդես գալ ընդդեմ սպառազինության մրցավազքի։

Բայց ո՛չ Ֆրանսիայում և ո՛չ էլ Իտալիայում Փարիզյան պայմանագիրը դեռևս վավերացված չէ։

Արևմտյան Գերմանիան ագրեսիայի նոր օջախ դարձնելու հանցագործ պլանի դեմ ուղղված շարժումը Ֆրանսիայում համաժողովրդական բնույթ է կրում։ Չխոսելով արդեն ժողովրդական լայն մասսաների բողոքների մասին, բանվոր դասակարգի և նրա ավանգարդ կոմունիստական պարտիայի հետևողական պայքարի մասին, Ֆրանսիայում չկա մի բուրժուական պարտիա, որի ղեկավարության մեջ չլինեն «Եվրոպական բանակի» հակառակորդներ։ Անգամ ՄՌՊ (հայտնի ամերիկյան քաղաքականություն վարող Բիդոյի պարտիան, որը ներկայացնում է խոշոր կապիտալի շահերը) ստիպված էր միջոցառումներ ձեռք առնել պառլամենտում իրենց «անհնազանդ» ներկայացուցիչների դեմ, որոնք հրաժարվում են քվեարկել «եվրոպական բանակի» օգտին։

«Եվրոպական բանակի» դեմ հանդես են



գալիս դգոլականները, ռադիկալներից և ռադիկալ-սոցիալիստներից շատերը, սոցիալիստ դեպուտատների մեծամասնությունը։ Ազգային ժողովի արտաքին գործերի հանձնաժողովը հունիսի 9-ին արտահայտվեց Փարիզի պայմանագրի վավերացման դեմ։ Պայմանագրի օգտին քվեարկեց հանձնաժողովի 18, դեմ՝ 24 անդամ։ Նույն այդպիսի որոշում ընդունեց պաշտպանության ֆրանսիական Միության ժողովի ազգային պաշտպանության հանձնաժողովը։ Բնորոշ է, որ չնայած վերջերս սոցիալիստական պարտիայի համագումարում ընդունած որոշման, որը պարտավորեցնում էր սոցիալիստ-դեպուտատներին պառլամենտում քվեարկել Փարիզյան պայմանագրի վավերացման օգտին, Ազգային ժողովի արտաքին գործերի հանձնաժողովի 9 սոցիալիստ անդամներից 6-ը քվեարկեցին «եվրոպական բանակի» դեմ։

Հունիսի 12-ին, երբ պառլամենտում Լանյելի կառավարությունը վստահության հարց դրեց, նա պարտություն կրեց։ Չնայած վստահության քվեարկությունը կատարվում էր հնդկաչինյան հարցի քննարկման կապակցությամբ, ֆրանսիական կառավարության արտաքին քաղաքականությունը գնահատվեց

ամբողջությամբ, այդ թվում նաև Փարիզի պայմանագրի սպասվող վավերացումը: Քվեարկության արդյունքները հայտնի են: Կառավարության քաղաքականությանը հավանություն են տվել 293 ձայն, ընդդեմ՝ 306 ձայնի և կանչելը, որը հավատացնում էր ԱՄՆ-ին, որ պառլամենտում կհասնի Փարիզի պայմանագրի վավերացմանը, ստիպված եղավ հրաժարական տալ:

Այդ նույն օրը, Փարիզում, Ձմեռային օդանավակայանում բացվեց համուն Ֆրանսիայի խաղաղության և անկախության ժողովրդական ժողովը, երկրի բոլոր 90 դեպարտամենտների ներկայացուցիչների մասնակցությամբ: Ժողովրդի տարբեր խավերը ներկայացնող հազարավոր դելեգատները՝ բանվորներ, ծառայողներ, գյուղացիներ, մանր առևտրականներ և ազգային բուրժուազիան, քաղաքական տարբեր պարտիաներն ու հոսանքները Ֆրանսիայի ժողովրդի անունից պահանջեցին վերջնականապես մերժել «եվրոպական բանակի» մասին պայմանագիրը, գերմանական հարցը կարգավորել խաղաղ ճանապարհով և ապահովել կոլեկտիվ անվտանգությունը Եվրոպայում:

Իտալական մամուլի հաղորդագրությամբ ամբողջ Իտալիայում անց են կացվում մի-



տինգներ և ժողովներ, որոնցում ընդունվում են բողոքի բանաձևեր ընդդեմ գերմանական միլիտարիզմի վերականգնման: Աշխատանքի համաիտալական կոնֆեդերացիան, որն իր շարքերում ունի հինգ միլիոն անդամ, իտալական կանանց Միությունը (1,5 միլ. անդամ), պարտիզանների ազգային ասոցիացիան և մասսայական մյուս կազմակերպությունները պառլամենտից պահանջում են հրաժարվել «եվրոպական բանակի» մասին պայմանագիրը վավերացնելուց: Իտալական կոմունիստական պարտիան և Իտալիայի սոցիալիստական պարտիան, որոնց քաղաքականությունը վերջին ընտրություններին պաշտպանեցին մոտ 10 միլիոն ընտրողներ, պայքարում են «եվրոպական բանակի» մասին պայմանագրի մերժման համար: Անգամ քրիստոնեական դեմոկրատների մեջ էլ, որը ղեկավարող պարտիա է և որի ղեկավարությունը ԱՄՆ-ի կառավարող շրջանների դիրեկտիվների մոլի կիրառողն է հանդիսանում, այդ հարցում միասնություն չկա: Կաթոլիկների աչքի ընկնող ներկայացուցիչներից շատերը կառավարությանը խորհուրդ են տալիս չշտապել վավերացնելու Փարիզի պայմանագիրը:

Աճում է Արևմտյան Գերմանիայի սպա-

ռազինման դեմ ուղղված շարժումը Անգլիա-
յում, որի կառավարությունը անում է ամեն
ինչ, որպեսզի արագացվի Փարիզի պայմա-
նագրի վավերացումը Ֆրանսիայի և Իտա-
լիայի կողմից։ Գերմանական միլիտարիզմի
վերածնման դեմ վճռականորեն արտահայտ-
վում են Անգլիայի ճյուղային պրոֆմիու-
թյունների ներկայումս տեղի ունեցող ամեն-
տարյա կոնֆերենցիաների մասնակիցները։
Բողոքի բանաձևով հանդես են գալիս 2 մի-
լիոնից ավելի անդամ ունեցող պրոֆմիու-
թյունները։ Փաստորեն տրեդ-յունիոնների
բրիտանական կոնգրեսի համարյա բոլոր ըն-
տրին կազմակերպությունները, որոնք ի-
րենց շարքերում համախմբում են 8 միլիո-
նից ավելի բանվորներ ու ծառայողներ, հան-
դես են գալիս Գերմանիայի վերազինման
դեմ։ Հունիսի 9-ին 11 միլիոն անդամ ունե-
ցող կոոպերատիվ միության կոնգրեսը
վճռականորեն դատապարտեց «եվրոպական
պաշտպանական միավորում» ստեղծելու քա-
ղաքականությունը։ Հարկադրված լինելով
հաշվի առնել ժողովրդական մասսաների
պահանջները, լեյբորիստական պառլամեն-
տական ֆրակցիայի համարյա կեսը հանդես
եկավ պարտիայի ղեկավարության պաշտպա-
նական քաղաքականության դեմ։ Էտլիի և



Մորիսոնի՝ գերմանական ռևանշիստական
բանակի վերածնման այդ կողմնակիցների
կոչերը գնալով ավելի սուր հակահարվածի
են հանդիպում։
Հենց Արևմտյան Գերմանիայում հասարա-
կայնության լայն խավերը սկսում են ավելի
գիտակցել, թե գերմանական ժողովրդի
ազգային շահերի համար ինչպիսի լուրջ
վտանգ է հանդիսանում Գերմանիայի մաս-
նատումը՝ գերմանական ժողովրդին նոր թըշ-
վառությունների դատապարտող տխրա-
հռչակ «եվրոպական պաշտպանական միա-
վորումը»։ Պայմանագրի դատապարտումով
հանդես եկան այնպիսի նշանավոր գործիչ-
ներ, ինչպիսիք են գերմանական նախկին
կանցլերներ Իոզեֆ Վիրտը և Բրյունինգը,
ավետարանական եկեղեցու ղեկավար Նիմել-
լերը, միասնության, խաղաղության և ազա-
տության համար պայքարող գերմանացինե-
րի Միության նախագահ Վիլհելմ Էլֆելսը և
ուրիշները։ Փարիզի պայմանագրի դեմ հան-
դես են գալիս Արևմտյան Գերմանիայի օպո-
զիցիոն պարտիաները, այդ թվում սոցիալ-
դեմոկրատները։ Արևմտա-գերմանական բը-
նակչության լայն խավերի տրամադրության
մասին են վկայում մասնավորապես Դյուսել-
դորֆի շրջաններից մեկում արևմտա-գերմա-

նական հայրենասերների կողմից անցկացված հարցման տվյալները։ Հարցմանը պատասխանած 512 բնակչից 458-ը արտահայտվեցին խաղաղ պայմանագրի օգտին և միայն 4-ը պաշտպանեցին «Եվրոպայի պաշտպանական միավորումը»։ «Դոյչե Ֆոլկսցեյտունգ» թերթը վերջերս գրեց, որ Արևմտյան Գերմանիայի տարբեր մասերի բնակչության հարցման ընթացքում նրանց 90—95 տոկոսը դատապարտում է «եվրոպական բանակի» մասին պայմանագիրը։

Հարկ չկա հիշեցնելու, որ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ուժերը, այնպես, ինչպես ամբողջ դեմոկրատական լագերի ժողովուրդները համառ պայքար են մղում ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ պլանների դեմ։

Արտահայտելով միլիոնավոր մարդկանց կամքը և ձգտումները, միջազգային այնպիսի մասսայական կազմակերպություններ, ինչպիսիք են Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիան, Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան, Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան, Խաղաղության համաշխարհային խորհուրդը և ուրիշներ պահանջում են գերմանական պրոբլեմը լուծել խա-



ղաղ ճանապարհով, կոչ են անում ժողովրդական մասսաներին՝ թույլ չտալ Արևմտյան Գերմանիան վերածել ագրեսիայի նոր օջախի։

Գերմանական միլիտարիզմի վերածնման դեմ ուղղված ուժեղացող ժողովրդական շարժումը վկայում է այն մասին, որ միլիոնավոր մարդիկ խաղաղության գործը վերցնում են իրենց ձեռքը։ Ժխտելով «Եվրոպայի պաշտպանական միավորում» ստեղծելու ագրեսիվ պլանները, արևմտա-եվրոպական երկրների ժողովրդական մասսաները աշխատում են հասնել համաեվրոպական կոլեկտիվ անվտանգության իդեայի իրականացմանը։

Սովետական առաջարկությունը «Եվրոպայում կոլեկտիվ անվտանգության համաեվրոպական պայմանագիր» կնքելու մասին, որը առաջադրեց Վ. Մ. Մոլոտովը արտաքին գործերի մինիստրների Բեռլինի խորհրդակցությունում, վայելում է ժողովուրդների լայն աջակցությունը, որոնք դրանում տեսնում են ազգերի անվտանգության և խաղաղության ուղին։

---

## ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ

Սովետական ժողովուրդը ամեն տարի լայնորեն նշում է Ֆիզկուլտուրնիկի համամիութենական օրը՝ երիտասարդության ուժի և գեղեցկության տոնը։

Հարազատ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշտապես հոգ են տանում, որպեսզի երիտասարդ սերունդը աճի ֆիզիկապես կոփված, խիզախ, առույգ, վստահ իր ուժերի վրա, կամքով արի, պատրաստ հաղթահարելու ամեն մի դժվարություն՝ հանուն կոմունիզմի կառուցման։ Այս մեծ ու վեհ նպատակին է ծառայում ֆիզիկական կուլտուրան, որը Կոմունիստական պարտիան միշտ դիտել է. որպես աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց առողջության պահպանման ու ամրապնդման, աշխատանքի և սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության համար նրանց պատրաստության կարևոր միջոցներից մեկը։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարու-



թյունը ստեղծել են բոլոր անհրաժեշտ պայմանները ֆիզկուլտուրան և սպորտը ժողովրդական ամենալայն մասսաների սեփականությունը դարձնելու համար։ Բավական է նշել, որ 1954 թվականին առողջապահության և ֆիզիկական կուլտուրայի վրա պետական բյուջեով նախատեսված է ծախսել 29 միլիարդ 278 միլիոն 433 հազար ռուբլի։ Սովետական ֆիզկուլտուրնիկների տրամադրության տակ են դրված հազարավոր ստադիոններ, սպորտային հրապարակներ ու դահլիճներ, ջրային ու դահուկային կայաններ։ Այժմ դժվար է գտնել մեր երկրում այնպիսի քաղաք, խոշոր գյուղ կամ արդյունաբերական ձեռնարկություն, որտեղ չլինի ստադիոն կամ սպորտային հրապարակ։ Միայն պրոֆեսիոնալ միությունների սպորտային ընկերությունների տրամադրության տակ են դրված 1.200 ստադիոն, 55 հազար սպորտ հրապարակ, մարմնամարզության դահլիճներ, ջրային և դահուկային կայաններ, հրաձգարաններ, տուրիստական բազաներ ու ալպինիստական ճամբարներ։

Մեր երկրում գործում են ֆիզիկական կուլտուրայի 13 բարձրագույն ուսումնական հաստատություն, 39 տեխնիկում։ Ֆիզիկական կուլտուրան դասավանդվում է բոլոր

դպրոցներում, տեխնիկումներում և բուհերում։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 5-րդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի կողմից հաստատված դիրեկտիվներում խնդիր է դրված ապահովել ֆիզկուլտուրայի և սպորտի հետագա զարգացումը։ Իրագործելով Կոմունիստական պարտիայի կողմից առաջադրված խնդիրները, սովետական ֆիզկուլտուրնիկները հասել են նշանակալից նվաճումների։ Պարտիայի հոգատարությամբ աճել է սովետական ֆիզկուլտուրնիկների բազմամիլիոն մի բանակ, որն ամենաուժեղն է և ամենախոշորը ամբողջ աշխարհում։ 1948 թվականի համեմատությամբ, այժմ ՍՍՌՄ-ում ֆիզկուլտուրնիկների և ֆիզկուլտ կոլեկտիվների թիվն ավելացել է ավելի քան երկու անգամ։

Սպորտային խոշոր իրադարձություն հանդիսացավ «Կոլտնտեսական» կամավոր սպորտ ընկերության ստեղծումը, որն այժմ իր շարքերում միավորում է հարյուր հազարավոր գյուղական ֆիզկուլտուրնիկների։ ՍՍՌՄ-ում ֆիզկուլտուրայի մասսայականությունը զուգակցվում է սովետական



սպորտսմենների սպորտային աճող վարպետության հետ։

Եթե 1948 թվականին սահմանվել է 202 համամիութենական ռեկորդ, ապա 1951 թվականին այն հասնում է 523-ի։ 1949—1953 թվականների ընթացքում համամիութենական ռեկորդները լրացվել են ավելի քան 2.000 անգամ։ Սովետական սպորտսմենները այդ նույն ժամանակամիջոցում 170 անգամ գերազանցել են համաշխարհային ռեկորդները։ Ավելի քան 80 համաշխարհային ռեկորդ պատկանում է սովետական սպորտսմեններին։ Սովետական խոկեիստները, չմշկավորները, դահուկավորները, մարմնամարզիկները, վոլեյբոլիստները, ըմբիշները, շախմատիստները, հրաձիգները նվաճել են համաշխարհային առաջնություն, իսկ ծանր ու թեթև ատլետները, բասկետբոլիստները և բասկետբոլիստուհիները իրենց ձեռքում ամուր պահում են Եվրոպայի չեմպիոնի կոչումը։

Խոշոր նվաճումներ ձեռք բերեցին սովետական սպորտսմենները 1952 թվականի ամռանը Հելսինկիում կայացած միջազգային 15-րդ օլիմպիական խաղերի ժամանակ, որին մասնակցում էին ավելի քան 70 երկրների սպորտսմեններ։ Միջազգային 15-րդ

օլիմպիական խաղերի ժամանակ սովետական սպորտսմենները նվաճեցին ավելի քան 106 ոսկե, արծաթե և բրոնզե մեդալներ։ 1954 թվականը սովետական սպորտսմեններին բերեց նոր ու մեծ հաղթանակներ։

Սովետական երիտասարդ սպորտսմենները՝ Լիդա Սելիխովան և Բորիս Շիլկովը նվաճեցին արագ չմշկավազքի գծով աշխարհի չեմպիոնի կոչում։ Սովետական սպորտսմեն Վլադիմիր Կուցինը աշխարհի չեմպիոնի կոչում նվաճեց 30 և 50 կիլոմետր դահուկային վազքում։ Այդպիսի սպորտային արդյունքի չի հասել դեռևս աշխարհի և ոչ մի դահուկավոր։ Մարտ ամսին Ստոկհոլմում խոկեի գծով կայացած աշխարհի առաջնության մրցումներում սովետական խոկեիստները առաջին անգամ նվաճեցին աշխարհի և Եվրոպայի չեմպիոնի կոչումը։ Մեր բասկետբոլիստուհիները 4-րդ անգամ նվաճեցին Եվրոպայի չեմպիոնի կոչումը։

Նյու-Յորքում կայացած ՍՍՌՄ-ԱՄՆ շախմատային մատչում սովետական շախմատիստները փայլուն հաղթանակ տարան։ Սովետական ֆուտբոլիստները հաղթանակով դուրս եկան ֆրանսիական, դանիական ֆուտբոլիստների հետ այս տարի կայացած միջազգային հանդիպումներից։ Տարեցտարի



ընդլայնվում և ամրապնդվում են սովետական սպորտսմենների միջազգային կապերը։ Միայն 1953 թվականին սովետական սպորտսմենները հանդես են եկել 19 երկրներում և Սովետական Միություն են հրավիրել 29 երկրների սպորտսմենների։ Անց է կացվել ավելի քան 60 միջազգային հանդիպում, որոնք մեծ չափով նպաստել են սովետական երիտասարդության և մյուս երկրների երիտասարդության միջև բարեկամական կապերի ամրապնդմանը։

Սովետական սպորտսմենները մասնակցում են 30 միջազգային սպորտային կազմակերպությունների աշխատանքներին, որտեղ նրանք պայքարում են իմպերիալիստների կողմից սպորտը շահույթի, շահագործման, աշխատավորների դասակարգային գիտակցության բթացման համար օգտագործելու դեմ, պայքարում են ժողովուրդների միջև միջազգային անվտանգության և համագործակցության ամրապնդման համար։

Հսկայական չափով զարգանում է ֆիզկուլտուրան և սպորտը Սովետական Հայաստանում։ Եթե 1948 թվականին ռեսպուբլիկայում կար 780 ֆիզկուլտ կոլեկտիվ, որտեղ ընդգրկված էին ավելի քան 40 հազար հոգի, ապա այժմ մենք ունենք 2 հազար 141 ֆիզ-

կուլտ կոլեկտիվ մոտ 150 հազար ֆիզկուլ-
տուրնիկներով։ Ֆիզկուլտուրան և սպորտը
դարձել է մեր ռեսպուբլիկայի աշխատավո-
րության սիրված զբաղմունքը, որը և մեծ
չափով ամրապնդում է նրանց առողջությու-
նը, օգնում աշխատելու արտադրողաբար։
Միայն ռեսպուբլիկական «Կոլտնտեսական»
սպորտ ընկերությունը ունի 617 ֆիզկուլտ
կոլեկտիվներ, ավելի քան 40 հազար գյուղա-
կան ֆիզկուլտուրնիկներով։ Ֆիզկուլտուրան
ամուր մտել է Արտաշատի շրջանի Անաստա-
սավան գյուղի կոլտնտեսականների կենցաղի
մեջ։ Գյուղում կազմակերպված է «Կոլտնտե-
սական» սպորտ ընկերության ֆիզկուլտ կո-
լեկտիվ, որն ընդգրկում է 315 կոլտնտեսա-
կանների։ Նրանք սիստեմատիկաբար պա-
րապում են թեթև ատլետիկայի, մարմնա-
մարզության, ֆուտբոլի, բասկետբոլի, վո-
լեյբոլի, շաշկի-շախմատի, սեղանի թենի-
սի սեկցիաներում։ Գյուղում կա ֆուտբոլի,
բասկետբոլի և վոլեյբոլի հրապարակ, մարմ-
նամարզության դահլիճ, վազքուղիներ և
այլն։ 15 լավագույն ֆիզկուլտուրնիկներ և
ակտիվիստներ հաստատված են Համամիու-
թենական գյուղատնտեսական ցուցահան-
դեսի թեկնածուներ։ Ֆիզկուլտուրան մաս-
սայական բնույթ է կրում Երևանի Տրամ-



վայ-տրոլեյբուսի վարչությունում։ «Տրուդ»
սպորտ ընկերության ֆիզկուլտ կոլեկտի-
վում ընդգրկված են վարչության 360 աշխա-
տողներ, որոնք պարապում են 8 սպորտ
սեկցիաներում։ Տրամվայ-տրոլեյբուսի վար-
չության ֆիզկուլտուրնիկներն իրենց ձեռքն
են պահում «Տրուդ» ռեսպուբլիկական
սպորտ ընկերության վոլեյբոլի, հրաձգու-
թյան և Երևան քաղաքի ֆուտբոլի ռավաթ-
ները։

Նշանակալից չափով աճել են ռեսպուբլիկա-
յի ֆիզկուլտուրնիկների սպորտա-տեխնի-
կական ցուցանիշները։ Եթե 1948 թվակա-
նին ռեսպուբլիկայում կար սպորտի 17
վարպետ, ապա այժմ նրանց թիվը հասնում
է 69-ի։ Եթե 1948 թվականին սահմանվել է
ռեսպուբլիկական 41 ռեկորդ, ապա այժմ
այն հասնում է 117-ի։

Սովետական ֆիզկուլտուրնիկներն ու
սպորտսմենները պայքարում են պատվով
կատարել այն նոր և մեծ խնդիրները, որ
նրանց առջև դրել են հարազատ Կոմունիս-
տական պարտիան և Սովետական կառա-
վարությունը։

---

## ՄԻ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

Երևանի Կոնսերվի գործարանի ագիտկոլեկտիվը, որին ղեկավարում է պարտկազմակերպության քարտուղար Արփիկ Այդինյանը, ագիտացիոն աշխատանքի դրական փորձ է կուտակել։ Գլխավորը, ինչին հաջողվել է հասնել ագիտկոլեկտիվին, այն է, որ գործարանում ագիտացիոն աշխատանք է տարվում ոչ թե դեպքից-դեպք, այլ սիստեմատիկորեն, ամբողջ տարվա ընթացքում։ Ագիտատորները գործարանի բանվորների և ծառայողների համար շաբաթական 3—4 անգամ ագիտացիոն զրույցներ և թերթերի ընթերցանություններ են կազմակերպում։ Նրանցից շատերն այդ գործում ցուցաբերում են հիանալի նախաձեռնություն, ունկնդիրների համար կազմակերպելով հետաքրքիր և բովանդակալից զրույցներ՝ քաղաքական, գիտական հարցերի, ինչպես նաև ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների հաջողությունների մասին։



Վերջին ժամանակներս ագիտատորներն ունկնդիրների համար զրույցներ են ունեցել հետևյալ թեմաների շուրջը. «Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակը», «Ժողովրդի բարեկեցության մասին հոգ տանելը բարձրագույն օրենք է Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության համար», «Սովետական պետությունը աշխարհի ամենադեմոկրատական ու ամենահզոր պետությունն է», «ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների անխախտ բարեկամությունը», «Կանանց դրությունը ՍՍՌՄ-ում և կապիտալիստական երկրներում», «Պլանը կատարելը յուրաքանչյուր բանվորի պարտքն է և պատվի գործը», «Պայքար իր գործարանի պատվի և փառքի համար», «Հանուն աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման» և այլն։

Մրգի ցեխի ագիտատոր Ս. Ավագյանը օրերս բանվորուհիների համար հատուկ զրույց կազմակերպեց սովետական երեխաների երջանիկ մանկության մասին։ Նա կոնկրետ օրինակներ բերեց գործարանի կյանքից, թե ինչպես իրենց մոտ ստեղծված են բոլոր անհրաժեշտ պայմանները երեխաների աճման ու զարգացման համար։

— Հենց մեր գործարանում,— ասաց նա,— ինչպես նաև ամենուրեք, երեխաները շրջապատված են հոգատար խնամքով ու գուրգուրանքով։ Գործարանն ունի սեփական մանկամսուր և մանկապարտեզ, ուր երեխաներին տրվում է առատ սնունդ, խելացի ու մտածված կերպով է կազմակերպվում նրանց նախադպրոցական դաստիարակությունը։ Այնուհետև նա կենդանի օրինակներով ցույց տվեց, որ գործարանի բանվորների բազմաթիվ երեխաներ դարձել են ինժեներներ, բժիշկներ և այլ որակյալ մասնագետներ. ագիտատորը սովետական երեխաների երջանիկ մանկությունը հմտորեն հակադրեց կապիտալիստական երկրների երեխաների ծանր ու թշվառ դրությանը։ Հուզված ագիտատորի զրույցից՝ ելույթ է ունենում բանվորուհի Ասլի Կարապետյանը, որը 24 տարի է, ինչ աշխատում է գործարանում։

— Մեր ցեխի երիտասարդ բանվորուհիները,— ասաց նա,— անծանոթ են այն բոլոր ծաղր ու ծանակին, որ կրում էր հայ կինը մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատվելը։ Ահա ես ձեզ օրինակ, այն ժամանակ, նախքան Հայաստանում Սովետական իշխանության հաստատումը, ունեի 10 երեխա, 1914 թվականի կոտորա-



ծի ժամանակ, մեր երկիրը ներխուժած թյուրքական զավթիչները սպանեցին ամուսնուս, երեխաներիս և բոլոր հարազատներիս։ Կարողացա փրկել միայն երկու աղջիկներիս և տղայիս։ Բայց հետագայում դաշնակները աղջիկներիս որբանոց ուղարկելու անվան տակ վաճառեցին ամերիկացիներին։ Այսպես էլ թշվառ որբերս անհայտ կորան։

Այնուհետև բազմավաստակ բանվորուհին անդրադառնում է երջանիկ ներկային։ Նա պատմում է, թե ինչպես իր թոռնիկները շրջապատված են հոգատարությամբ, ապրում են ուրախ ու զվարթ, դարձել են ուսման գերազանցիկներ, օգտվում են երեխաներին տրված բոլոր արտոնություններից։

Նպատակասլաց և բովանդակալից ագիտացիոն զրույցների նման օրինակներ գործարանում շատ կան։ Մի շարք ագիտատորներ, ինչպես, օրինակ, տակառի-արկղի ցեխի ագիտատոր Ս. Սարգսյանը, որը 8 տարի անընդհատ ագիտացիոն աշխատանք է տանում, պարբերաբար ունկնդիրների համար կազմակերպում է սոցմրցության առաջավորների ելույթներ, որոնք պատմում են, թե իրենք ինչպես են հասել արտադրական հաջողությունների։ Միաժամանակ զրույցների

ընթացքում հասարակական պարսավանքի են ենթարկվում աշխատանքում թերացողները, բացահայտվում են եղած թերությունները։

Գործարանի պարտկազմակերպության ագիտկոլեկտիվը սիստեմատիկաբար ուժեղացնելով ագիտատորներին ցույց տրվող օգնությունը, հասել է այն բանին, որ նրանք քաղաքական-բացատրական աշխատանքի ընթացքում օգտագործում են ագիտացիոն աշխատանքի բազմազան ձևերը, ինչպես, օրինակ՝ զրույց, թերթերի ընթերցանություն, գեղարվեստական ստեղծագործությունների բովանդակության համառոտ պատմում, էքսկուրսիաներ, կինոնկարների և թատերական ներկայացումների կոլեկտիվ դիտումներ, առաջավոր աշխատողների հետ հանդիպումներ և այլն։

Ագիտկոլեկտիվի հանձնարարությամբ ագիտատորները այս տարի գրեթե բոլոր ցեխերի բանվորներին տարել են էքսկուրսիա դեպի Խաչատուր Աբովյանի տուն-թանգարանը, Հովհաննես Թումանյանի թանգարանը, Պատկերասրահը, Պատմական թանգարանը, Պլանետարիան, կազմակերպել են «Փորձադաշտ», «Միքայել Նալբանդյան», «Աղբյուրի մոտ» և այլ թատերական ներկայացումների կոլեկտիվ դիտումներ։



Ագիտատորների հաջողությունները պետք է բացատրել նաև նրանով, որ պարտիական կազմակերպությունը մեծ ուշադրություն է դարձնում նրանց համար սիստեմատիկաբար կազմակերպվող սեմինար պարապմունքներն ավելի արդյունավետ և նպատակասլաց դարձնելու վրա։

Սեմինար պարապմունքներում հաճախակի հանդես են գալիս պարտկազմակերպության բյուրոյի քարտուղարը, գլխավոր ինժեները, աշխատանքի և աշխատավարձի բաժնի վարիչը և գործարանի մյուս ղեկավար աշխատողները, որոնք ագիտատորներին հանգամանորեն ծանոթացնում են գործարանի առջև ծառացած առաջնահերթ խնդիրների հետ։

— Սեմինար պարապմունքը,— ասում է ագիտատոր Ս. Ավագյանը,— ոչ միայն բարձրացնում է մեր տեսական մակարդակը, այլև սովորեցնում է մեզ ագիտացիոն աշխատանքի նոր ձևեր և մեթոդներ։

Վերջերս տեղի ունեցած սեմինար պարապմունքում, որպես ընդօրինակելի ագիտացիոն աշխատանք՝ նշվեց այն ագիտատորների փորձը, որոնք յուրաքանչյուր զրույցից հետո հաշվի են առնում ունկնդիրներին հետաքրքրող հարցերը և հետագայում այդ հարցերի շուրջը կազմակերպում են զրույցներ։

*Գործարանում լավ է կազմակերպված նաև ցուցադրական ագիտացիան։ Բոլոր աչքի ընկնող վայրերում փակցված են լոզունգներ, պլանների կատարման ցուցանիշների տախտակ, պատվո-տախտակ, դրված են ստենդներ։ Ցուցադրական այդ բոլոր նյութերը ձևակերպված են գեղարվեստորեն, որոնք կոչ են անում պատվով կատարել պարտիայի և կառավարության կողմից առաջադրված խնդիրները։*

*Այս բոլորի հետ միասին ագիտկոլեկտիվն ունի լուրջ թերություններ։ Ագիտատորները շատ քիչ են զրույցներ անցկացնում բնագիտական թեմաներով։ Բացի այդ, որոշ ագիտատորներ բարեխղճորեն չեն նախապատրաստվում ագիտացիոն զրույցին։*

*Օգտագործելով ագիտացիոն աշխատանքի բազմազան ձևերը, գործարանի ագիտկոլեկտիվը պարտկազմակերպության ղեկավարությամբ է՛լ ավելի կուժեղացնի աշխատավորության մեջ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքը՝ կմոբիլիզացնի նրանց ուժերը պարտիայի և կառավարության կողմից գործարանի առջև դրված բոլոր խնդիրները պատվով կատարելու համար։*

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

---

## ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻ ԹԵԿՆԱԾՈՒՆ

Ա. ՍԱՐԳՍՅԱՆ

*Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու է առաջադրված Մեղրու շրջանի Մեղրի գյուղի Ստալինի անվան կոլտնտեսությունը, որը զգալի նվաճումներ է ձեռք բերել հանրային տնտեսության զարգացման բնագավառում։ Ցուցահանդեսին կոլտնտեսությունը կմասնակցի տնտեսության գրեթե բոլոր ճյուղերի, հատկապես ջերմապահության և այգե-պտղաբուծության գծով։ Ջերմապահությունը կոլտնտեսության համար դարձել է բարձր բերքատու և առավել եկամտաբեր ճյուղերից մեկը։ Տարեցտարի ավելանում են ջերմապահությունից ստացվող եկամուտները։ 1950 թվականին կոլտնտեսությունը խնամում էր 156 տուփ գրենա, իսկ այս տարի՝ 189 տուփ։ Կոլտնտեսությունում խոշոր աշխատանք է կատարված շերամորդի կերի*

կայում բաղա ստեղծելու համար։ Միայն անցած երեք տարիների ընթացքում կոլտնտեսությունը տնկել է ավելի քան 210 հազար բարձրաբուն թթենի։ Տարեցտարի բարելավվում է թթենու մշակությունը։ Միայն ընթացիկ տարվա գարնանը կոլտնտեսությունը թթաստան է տեղափոխել 300 տոննա գոմաղբ և 30 տոննա հանքային պարարտանյութ։ Մասսիվ թթաստաններում աշնանը կատարվում է ցրտահերկ, գարնանը՝ կրկնավար, ամառվա ընթացքում փխրեցումը կատարվում է 3—4 անգամ, իսկ ոռոգումը՝ ըստ պահանջի։

Կոլտնտեսությունում հսկայական աշխատանք է կատարվում ընդարձակ ու լուսավոր շերամատներ կառուցելու ուղղությամբ։ Անցած երեք տարվա ընթացքում կառուցվել է 9 այդպիսի շենք՝ շուրջ 50 տուփ գրենայի տարողությամբ։ Շերամապահ կոլտնտեսականներն անընդհատ բարելավում են շերամորդի կերակրումն ու խնամքը։ Դրա շնորհիվ ամեն տարի ավելանում է բոժոժի քանակը։ Այսպես, օրինակ, 1950 թվականին գրենայի յուրաքանչյուր տուփից կոլտնտեսությունն ստացավ 79 կիլոգրամ, 1952 թվականին՝ 81 կիլոգրամ, իսկ 1953 թվականին 83 կիլոգրամ բոժոժ։ Առանձին շերամա-



պահներ, ինչպես, օրինակ, Ջ. Գալստյանը, Ա. Մեժլումյանը, Ա. Գաբրիելյանը, Զ. Համբարձումյանը և ուրիշները նախատեսված 73 կիլոգրամի փոխարեն գրենայի յուրաքանչյուր տուփից ստացան 95—100 կիլոգրամ բոժոժ։

Մեծ են կոլտնտեսության հաջողությունները նաև այգեգործության զարգացման բնագավառում։ Անցած տնտեսական տարում կոլտնտեսությունը պտղատու այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 103 ցենտներ բերք, նախատեսված 55 ցենտների դիմաց։ 1953 թվականին կոլտնտեսությունը Կոնսերվի գործարանին հանձնեց 500 տոննա միայն բարձրարժեք պտուղներ, որից 30 տոննա թուզ և 380 տոննա դեղձ։ Անվանի այգեգործները ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում կատարելով այգիների էտի, փորի, պարարտացման, բուժման ոռոգման և մշակության մյուս աշխատանքները, տարիներ շարունակ բարձր բերք են ստանում։ Միայն 1953 թվականին խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից կոլտնտեսությունը ստացավ 143 ցենտներ խաղող, իսկ այգեգործական № 3 բրիգադայի Ե. Մանուկյանի օղակը իր մշակած այգու յուրաքանչյուր հեկտարից ստացավ 273

ցենտներ բերք։ Բարձր բերք աճեցնելու համար օղակի անդամները որպես լրացուցիչ վարձատրություն ստացան մոտ 9 տոննա խաղող։

Կենսագործելով ՍՄԿԴ Կենտկոմի Սեպտեմբերյան և Փետրվար-մարտյան պլենումների որոշումները, շրջկենտրոնի կոլտնտեսականները պայքարում են է՛լ ավելի բարձր ցուցանիշների համար։ Ընթացիկ տարվա գարնանը տնկվել է 3 հեկտար նոր և վերականգնվել 10 հեկտար պտղատու այգի։ Մեկ ու կես հեկտարի վրա ստեղծված է խաղողի, բարձրորակ դեղձի և մերձարևադարձային կուլտուրաների տնկարան, իսկ հաստատունկ կարգով տնկվել է 4.000 թզենի, նռենի և այլ մերձարևադարձային կուլտուրաների տունկեր։

Այդ բոլորի շնորհիվ տարեցտարի աճում է կոլտնտեսության հարստությունը։ 1953 թվականին, 1952 թվականի համեմատությամբ, կոլտնտեսությունը 600 հազար ռուբլի ավելի եկամուտ ստացավ։

Պարտիայի ու կառավարության հոգատարության և կոլտնտեսային կարգերի շնորհիվ անընդհատ բարձրանում է կոլտնտեսականների բարեկեցությունը։ 1953 թվականին կոլտնտեսականները վաստակած յուրաքանչյուր



աշխօրի դիմաց ստացան 25 ռ. 36 կ. դրամ և զանազան մթերքներ։ Կոլտնտեսական Պ. Բաբայանը իր ընտանիքով վաստակած աշխօրերի դիմաց ստացավ 31 հազար 516 ռ. դրամ, 9 ցենտներ հացահատիկ, 2 տոննա 102 կգ. խաղող, մեկ ու կես տոննա կարտոֆիլ ու բանջարեղեն, 120 կգ. մեղր ու կարագ, մոտ մեկ ցենտներ օղի և այլ մթերքներ։ Կոլտնտեսական Ա. Համբարձումյանը աշխօրերի դիմաց ստացավ մոտ 32 հազար ռուբլի, տասնյակների է հասնում 20 հազար ռուբլուց ավելի դրամ ստացող կոլտնտեսականների թիվը։

Ոգեշնչված պարտիայի և կառավարության հոգատարությամբ՝ կոլտնտեսային աշխատավորությունը ջանք չի խնայի կոլտնտեսության առջև դրված խնդիրները պատվով կատարելու համար։

---

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆՇԵՂ ՎԵՐԵԼՔԸ

(Թվեր ու փաստեր)

*Անշեղ վերելք է ապրում Սովետական Հայաստանի ժողովրդական լուսավորությունը։ Ռեսպուբլիկան պատվել է ուսումնական հիմնարկների խիտ ցանցով։ Հաջողությամբ իրականացվում է գյուղում յոթնամյա և քաղաքում տասնամյա պարտադիր ուսուցումը։ Այդ նպատակով տարեցտարի ընդարձակվում է դպրոցների ցանցը, ամրապնդվում է դպրոցների նյութական-տեխնիկական բազան, ավելանում է ուսուցիչների քանակը։ Մեծ հաջողություններ են ձեռք բերված բարձրագույն կրթության զարգացման գործում։*

✪ *Ներկայումս ռեսպուբլիկայի քաղաքներում, ավաններում, գյուղերում և երկաթուղային կայարաններում գործում են 1.172 հանրակրթական դպրոց, ուր ընդգրկված են պարտադիր ուսուցման ենթակա բոլոր երեխաները։ Պայմաններ են ստեղծվում առաջիկա տարիներում գյուղում պարտադիր միջնակարգ կրթության անցնելու համար. եթե 1953/54 ուս. տարում*



*Հայաստանում կար 314 միջնակարգ դպրոց (առանց Անդրերկաթուղու դպրոցների), ապա նոր ուսումնական տարում պետք է գործեն 343 միջնակարգ դպրոց, որից 205-ը գյուղում։ Ռեսպուբլիկայի բոլոր բնակավայրերն ունեն իրենց դպրոցները։*

✪ *Տարեցտարի աճում է հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը։ Անցած ուսումնական տարում մեր դպրոցներում սովորում էին 296 հազար 595 աշակերտ, բացի հայկական դպրոցներից, քաղաքներում և գյուղերում գործում են ռուսական, ադրբեջանական և քրդական հանրակրթական դպրոցներ, ուր իրենց մայրենի լեզվով սովորում են ռեսպուբլիկայում բնակվող այդ ազգությունների երեխաները։*

✪ *Սովետական իշխանության անցած 34 տարիներում կառուցվել ու կառուցվում են հարյուրավոր գեղեցիկ, լուսավոր և բոլոր հարմարություններն ունեցող դպրոցական շենքեր։ Պետությունը ամեն տարի մեծ հատկացումներ է կատարում դպրոցական նոր շենքերի կառուցման համար. բավական է նշել, որ եթե այդ նպատակին 1953 թվականին ծախսվել է 15,8 միլիոն, ապա ընթացիկ տարում ծախսվելու է մոտ 19 միլիոն ռուբլի։*

✪ *Հանրակրթական դպրոցներում աշխատում են մոտ 15.500 ուսուցիչներ, որոնց ավելի քան 70 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն, իսկ մնացածները միջնակարգ մանկավարժա-*

կան կրթություն։ Անցած հինգ տարիների ընթացքում մանկավարժական աշխատանքի է ուղարկված 5.186 մարդ։

✪ Քաղաքներում, ավաններում և գյուղերում գործում են հարյուրավոր նախադպրոցական հիմնարկներ, ուր անցյալ տարի ընդգրկված էին ավելի քան 11 հազար երեխաներ։

✪ Բացի հանրակրթական մասսայական դպրոցներից, կան 44 մասնագիտական միջնակարգ ուսումնական հաստատություններ՝ տեխնիկումներ, ուսումնարաններ, ուր սովորում են տասնյակ հազարավոր երիտասարդներ։ Այդ դպրոցները միջին որակի բազմաթիվ տարբեր մասնագիտական կադրեր են տալիս ժողովրդական տնտեսությանը։

✪ Արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ աշխատող երիտասարդներին առանց արտադրությունից կտրելու յոթնամյա և միջնակարգ հանրակրթական կրթություն տալու նպատակով, կազմակերպված են բանվոր և գյուղական երիտասարդության երեկոյան 134 դպրոցներ, ուր սովորում են 12.029 երիտասարդներ։

✪ Ռեսպուբլիկայում ներկայումս գործում են 13 ֆաբրիկա-գործարանային դպրոցներ, արհեստագործական ուսումնարաններ, ուր սովորում են հազարավոր աղջիկներ ու տղաներ։

✪ Բոլոր աշակերտները լրիվին ապահովված են դասագրքերով և գրենական պիտույքներով։ Միայն



ընթացիկ տարում Հայաստանի Պետական հրատարակչությունը մասսայական դպրոցների համար լույս է ընծայելու 98 անուն դասագիրք՝ ավելի քան 2 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով։ Բացի դրանից, Ռուսաստանի ֆեդերացիայից և Ադրբեջանից ստացվելու են անհրաժեշտ քանակությամբ դասագրքեր՝ ռուսական և ադրբեջանական դպրոցների աշակերտների համար։

✪ Մեր դպրոցականների համար ստեղծված են բոլոր պայմանները նրանց հանգստի, ժամանցի և կուլտուրական պահանջմունքների բավարարման համար։ Երեխաների տրամադրության տակ են դրված լավագույն ամառանոցային վայրերը, այգիները, պարկերը, գրադարանները, պիոներական պալատները և տները, սպորտային հրապարակները, տեխնիկական և բնագիտական կայանները, թատրոնները, կինոները։ Լուսավորության մինիստրության սիստեմում կազմակերպված է և գործում է պատանեկական 31 սպորտ դպրոց։ Այս ամռանը պիոներական 50 ճամբարներում հանգստանալու են 36 հազար 650 երեխա, բացի այդ, մանկական սանատորիաներում բուժվելու են հարյուրավոր երեխաներ։

✪ Մեծ հոգատարություն է ցուցաբերվում ուսուցիչների նյութական-կուլտուրական պահանջմունքների բավարարման նկատմամբ։ Ուսուցիչների համար կառուցվում են բնակարաններ. ընթացիկ տարում ամառային արձակուրդներին ռեսպուբլիկայի և Միու-

թյան առողջարաններում կհանգստանան և կբուժվեն 1.300 ուսուցիչներ։

Առանց արտադրությունից կտրվելու բարձրագույն մանկավարժական կրթություն են ձեռք բերում մեծ թվով ուսուցիչներ։ Հայկական Հեռակա մանկավարժական ինստիտուտում ներկայումս սովորում են մոտ 4.000 մարդ։

✪ Ռեսպուբլիկայում ներկայումս գործում են 12 ստացիոնար բարձրագույն ուսումնական հաստատություն, ինչպես նաև հեռակա հինգ ինստիտուտ, ուր սովորողների թիվը 1940 թվականի համեմատությամբ, 1953 թվականին աճել է 2,8 անգամ։ Ամեն տարի ռեսպուբլիկայի բուհերը ժողովրդական տնտեսությանը տալիս են հազարավոր ինժեներներ, բժիշկներ, մանկավարժներ, ագրոնոմներ և այլ մասնագետներ։ Կառուցվում են Երևանի Պետական համալսարանի և Պոլիտեխնիկ ինստիտուտի նոր մեծ շենքերը։

✪ Ռեսպուբլիկայի 1954 թվականի պետական բյուջեի 45 տոկոսը հատկացված է լուսավորության գործի կազմակերպմանը. միայն Լուսավորության մինիստրության գծով ժողովրդական կրթության նպատակին հատկացված է 340 միլիոն ռուբլի (պետական բյուջեին ծախսերի գծով կազմում է 1.225 հազար ռուբլի)։

— Այն ժամանակ, երբ Սովետական Միությունում և նրա անբաժան մասը կազմող Հայաստանում հըս-



կայական ուշադրություն է դարձվում ժողովրդական լուսավորության գործին, ապա կապիտալի աշխարհում այն ներկայացնում է մի անհրապույր պատկեր։ Տարեցտարի կրճատվում են ժողովրդական լուսավորության գործին հատկացվող պետական գումարները, փակվում են դպրոցները, բարձրագույն ուսումնական հաստատությունները, ավելանում է անգրագետների թիվը։

✪ ԱՄՆ-ի պետական բյուջեով ռազմական ուղղակի ծախսերին հատկացված են 155 անգամ շատ միջոցներ, քան լուսավորության ծախսերի համար։ Տասը միլիոն երեխաներ հնարավորություն չունեն սովորելու և դուրս են մնացել դպրոցներից։ Երկրում խայտառակ է դպրոցաշինարարությունը։

✪ Անգլիայում պետական բյուջեով լուսավորության աշխատանքներին տրամադրված է միայն 7 տոկոսը։ Պաշտոնական տվյալներով 1946 թվականին երկրում կար 250 հազար անգրագետ և 2 միլիոն կիսագրագետ մարդ։ Ուսուցիչների միայն 18,5 տոկոսն ուներ բարձրագույն ուսումնական հաստատության դիպլոմ։

✪ 1948—49 ուսումնական տարում Իտալիայի միայն տարրական դպրոցներում չէին ընդգրկված ավելի քան 1 միլիոն 700 հազար երեխաներ։ Պաշտոնական տվյալներով երկրում չի բավարարում 73.000 դասարան։

✪ Իրանի բնակչության մոտ 90 տոկոսը անգրագետ է։ 1950 թվականին սովորում էին դպրոցական հասակի երեխաների միայն 7 տոկոսը։

---

# ԳՎԱՏԵՄԱԼԱ

Գվատեմալան Կենտրոնական Ամերիկայի պետություններից մեկն է, նրա տերիտորիան կազմում է 109,7 հազար քառ. կմ., իսկ բնակչությունը՝ մոտ 3 միլիոն 800 հազար է։ Երկրի մայրաքաղաքն է Գվատեմալան, որն ունի 300 հազարից ավելի բնակիչ։ Երկրի բնակչության 60 տոկոսը հնդիկներ են։ Պետական լեզուն իսպաներենն է։ Իր պետական կառուցվածքով Գվատեմալան բուրժուական ռեսպուբլիկա է։ Պետության գլուխն է կանգնած պրեզիդենտը, որն ընտրվում է ուղղակի ընտրություններով։

Գվատեմալան ագրարային երկիր է։ Նրա տնտեսության մեջ առաջատար տեղ են գրավում արևադարձային կուլտուրաները՝ բանանը և սուրճը, շաքարեղեգը և կակաոն, իսկ արդյունաբերությունը թույլ է զարգացած։

20-րդ դարի սկզբից մինչև վերջին ժամանակներս Գվատեմալայի տնտեսության մեջ վճռական դեր էին խաղում օտարերկրյա իմպերիալիստական մոնոպոլիաները և առաջին հերթին ամերիկյան «Յունայտեդ ֆրուտ կոմպանի»-ն, որն իրականում հանդիսանում






էր «պետություն պետության մեջ» և իր ձեռքում էր պահում ոչ միայն բանանի պլանտացիաները, այլև երկաթուղիները, ծովագնացությունը և արտաքին առև-

տրի նշանակալից մասը։ Այդ ընկերությանն են պատկանում նաև նավահանգիստները Պուէրտո-Բարրիոսում, Սան-Խոսեյում և Չամպերիկոյում։ «Յունայտեդ ֆրուտ կոմպանի» ընկերության տիրապետությունը Գվատեմալայի էկոնոմիկայի մեջ մեծ խոչընդոտ էր երկրի արտադրական ուժերի զարգացման համար։

Կենտրոնական Ամերիկայի երկրներում «Յունայտեդ ֆրուտ կոմպանի» իմպերիալիստական ընկերությանը անվանում են «բանանային կայսրություն»։ Կենտրոնական Ամերիկայի և Կարաիբյան ծովի երկրներում այդ ընկերությանն են պատկանում համարյա 600 հազար ակր մշակվող հողային տարածություններ, 65 նավից բաղկացած մի ամբողջ նավատորմ, 1500 մղոնից ավելի երկաթուղային գծեր։ Նրա վերահսկողության տակ են գտնվում ռադիոկապի միջոցները, էլեկտրաէներգիայի արտադրությունը և քաղաքային տրանսպորտը։ Այդ ահագին «կայսրությունից» «Յունայտեդ ֆրուտ կոմպանի»-ն ստանում է հսկայական շահույթներ, որոնք կազմում են տարեկան 70-ից մինչև 100 միլիոն դոլար։

Մինչև 1944 թվականը Գվատեմալայի կառավարիչները «Յունայտեդ ֆրուտ կոմպանի»-ի ուղղակի դրածոներն էին։ 1944 թվականին Գվատեմալայի հայրենասիրական ուժերը երկրում հաստատեցին բուրժուա-դեմոկրատական ազատություններ, ընդունվեց աշխատանքային օրենսդրություն, ստեղծվեցին դեմոկրատական պարտիաներ, պրոֆմիություններ։ Սակայն իմ-



պերիալիստները չուզեցին անձնատուր լինել և իրենց գործակալների՝ ժողովրդի դավաճանների ջանքերով կազմակերպեցին օրինական կառավարության տապալման ավելի քան 30 փորձ։ Բայց այդ փորձերը անցան ապարդյուն։

1950 թվականին Գվատեմալայի պրեզիդենտ ընտրվեց Հակոբո Արբենսը։ Նրա կառավարությունը իրագործեց բուրժուա-դեմոկրատական վերափոխումներ։ Այդ կառավարությունը ստանում էր օժանդակություն ժողովրդի լայն մասսաների կողմից, որոնք վաղուց արդեն պայքարում են ֆեոդալիզմի մնացուկների և երկրում տիրող ամերիկյան մոնոպոլիաների դեմ։

1952 թվականի հունիսին ժողովրդական մասսաների պահանջով ընդունվեց ագրարային ռեֆորմի մասին օրենքը, որի համաձայն խոշոր հողատերերի չմշակվող հողամասերը բաժանվում են հողազուրկ գյուղացիների միջև կամ դառնում են պետական սեփականություն և հանձնվում վարձով։ Հողատերերը ստանում են համապատասխան փոխհատուցում վերցված հողերի համար։ Հողային ռեֆորմի հետևանքով «Յունայտեդ ֆրուտ» ընկերությունից վերցվեց մոտ 160 հազար հեկտար հող։ Տասնյակ հազարավոր հողազուրկ գյուղացիական տնտեսություններ ստացան հողամասեր։

Գվատեմալայի կառավարության այդ և մի շարք այլ դեմոկրատական վերափոխումները հանդիսացան ուժեղ հարված երկրի ռեակցիոն ուժերի և նրանց

հետևում կանգնած ամերիկյան իմպերիալիստների դեմ։ ԱՄՆ-ի պետական դեպարտամենտի հրահանգով Նյու-Յորքի և Վաշինգտոնի ռեակցիոն մամուլը բարձրացրեց հալածանքի և զրպարտության կատաղի կամպանիա։ Գվատեմալայում իրականացված հողային ռեֆորմը ԱՄՆ-ի կառավարող շրջանների կողմից գնահատվեց որպես «կոմունիստական սպառնալիք Ամերիկայի Միացյալ Նահանգների դեմ»։

1953 թվականին Գվատեմալայում տեղի ունեցան ընդհանուր ընտրություններ, որոնց ժամանակ պրոգրեսիվ պարտիաների բլոկը՝ Դեմոկրատական ճակատը Ազգային ժողովի 58 տեղից ստացավ 51-ը։ Գվատեմալայի Դեմոկրատական ճակատի մեջ են մտնում Ռևոլյուցիոն գործողության պարտիան և ուրիշ բուրժուական պարտիաներ, ինչպես նաև Գվատեմալայի աշխատանքային պարտիան (1930 թվականին ստեղծված կոմունիստական պարտիան 1952 թվականից կոչվում է Գվատեմալայի Աշխատանքային պարտիա)։

Ամերիկյան իմպերիալիստները սկսեցին տենդորեն մշակել Գվատեմալայի դեմ ինտերվենցիայի պլաններ, որպեսզի երկրի աշխատավորներին նորից դարձնեն «Յունայտեդ ֆրուտ կոմպանի»-ի ստրուկներ և խեղդեն ազգային-ազատագրական շարժումը։

Զգալով, որ այլ միջոցներով բոլորովին անհնարին է վերականգնել ամերիկյան իմպերիալիստական մոնոպոլիայի իրավունքները Գվատեմալայում և խեղդել ազգային ազատագրական ու դեմոկրատական շարժումը Լատինական Ամերիկայի երկրներում, ԱՄՆ-ի ագ-



րեսորները կազմակերպեցին և ս. թ. հունիսի 18-ին սկսեցին զինված ինտերվենցիա Գվատեմալայի դեմ։

Ինտերվենտների բանդաներին ղեկավարում է դավաճան Արմասը։ Ներխուժման հենց առաջին օրը ագրեսորները շատ քաղաքներ և գյուղեր ենթարկեցին գնդակոծման։ Այնուհետև ԱՄՆ-ի ագրեսորները օգտագործելով երկրի ռեակցիոն տարրերին, հատկապես Գվատեմալայի բանակի բարձրաստիճան ռեակցիոն սպայությանը, հեռացրին իր պոստից պրեզիդենտ Արբենսին և իշխանությունը հանձնեցին ռազմական խունտայի ձեռքը, որին գլխավորում էր Գվատեմալայի զինված ուժերի հրամանատար գնդապետ Դիասը։

Դիասը հրատարակեց հակաժողովրդական մի շարք դեկրետներ, որոնցով արգելվեց Գվատեմալայի աշխատանքի պարտիայի գործունեությունը և այդ պարտիայի անդամները հեռացվեցին պետական օրգանների աշխատանքին մասնակցելուց։

Ամերիկյան ագրեսորները փորձում են Գվատեմալայի վերջին իրադարձությունները ներկայացնել որպես իշխանության համար մղվող պայքար ռազմական խմբավորումների միջև, և ոչ թե որպես Գվատեմալայում ազգային ազատագրական շարժման՝ վաղօրոք նախապատրաստված դաժան ճնշում։ Այդ է պատճառը, որ նրանք հունիսի 29-ին կազմակերպեցին նոր իշխանության զավթումը գնդապետ Մոնսոնի կողմից, որը ցրեց ազգային ժողովը և բանակցություններ սկսեց ինտերվենտների պարագլուխ Արմասի հետ և «հաշտություն» կնքեց նրա հետ։

Մոնսոնի ռազմական խունտան տեռորիստական մեթոդներով ճնշում է ժողովրդական մասսաների դիմադրությունը, որպեսզի ամրապնդի իշխանությունն իր ձեռքում։ Բորբոքելով հակակոմունիստական հիստերիա, խունտան հարձակվում է դեմոկրատական պարտիաների և պրեզիդենտ Արբենսի կառավարությունը պաշտպանող կազմակերպությունների վրա։ Ռազմական խունտան, որը զավթել է իշխանությունը, հանդիպում է ժողովրդական մասսաների զինված դիմադրությանը։ Գվատեմալա քաղաքի մոտ գյուղատնտեսական բանվորների խմբերը հակահարված են տալիս ինտերվենտներին ու դավաճաններին։

Գվատեմալայի դեմ ամերիկյան իմպերիալիստների կողմից սանձազերծված ագրեսիան ամբողջ աշխարհում առաջ բերեց եղբայրական համերաշխության մասսայական շարժում Գվատեմալայի ժողովրդի հետ։

Տասնյակ և հարյուրավոր միլիոն մարդիկ աշխարհի բոլոր երկրներում խոր զայրույթի զգացմունքով դատապարտում են ամերիկյան ագրեսորների հանցագործությունները, որոնք ցանկանում են նորից սրել միջազգային հարաբերությունների մեղմացող լարվածությունը։

Գվատեմալայի աշխատավորները հերոսական դիմադրությամ են ցույց տալիս իմպերիալիստական ագրեսորներին, լավ գիտենալով, որ նրանց կողմն է գտնվում ամբողջ պրոգրեսիվ մարդկության սերը և համակրանքը։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԱՆԿՈՐՈՒՍՏ ՀԱՎԱՔԵԼ ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԸ

1. Կոլտնտեսությունների և մեքենա-տրակտորային կայանների մարտական խնդիրն է՝ բարձր կազմակերպվածությամբ անցկացնել բերքահավաքը։

2. Ինչ է արել մեր կոլտնտեսությունը և մեքենա-տրակտորային կայանը բերքահավաքը կազմ ու պատրաստ դիմավորելու համար։

3. Ժամկետից շուտ կատարենք հացահատիկի հանձնման պետական պարտավորությունները։

4. Բերքահավաքի ընթացքում լրիվ և արդյունավետ կերպով օգտագործենք գյուղատնտեսական տեխնիկան։

5. Ստեղծենք բոլոր անհրաժեշտ պայմանները՝ կոմբայնների բարձր արտադրողական աշխատանքի համար։

6. Է՛լ ավելի բարձրացնենք աշխատանքային կարգապահությունը բերքահավաքի օրերին։

7. Կոլտնտեսությունում աշխատանքի ճիշտ կազմակերպումը լավագույն միջոց է կանխելու բերքի կորուստը։

8. Լայնորեն տարածենք առաջավոր փորձը՝ բերքը սեղմ ժամկետում և անկորուստ հավաքելու համար։

9. Պատվով կատարենք ստանձնած պարտավորությունները։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. Մալենկով— *Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, Հայպետհրատ, 1952 թ., էջ 56—72։*

Գ. Մ. Մալենկով— *Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, Հայպետհրատ, 1953 թ., էջ 5—19։*

Ն. Ս. Խրուշչև— *ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1953 թ. սեպտեմբերի 3-ին, Հայպետհրատ, 1953 թ.։*

*Գարնանացանի արդյունքների, ցանքերի խնամքի, բերքահավաքի նախապատրաստության և 1954 թվականի գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանի կատարումն ապահովելու մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1954 թվականի հունիսի 24-ին, «Ս. Հ.», 1954 թ., 27 հունիսի։*

## ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԵՎ ՈՐԱԿԱԿԱՆ ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ԵՐԿՐՈՐԴ ԿԻՍԱՄՅԱԿԻ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՊԼԱՆՆԵՐԸ

1. Լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը՝ հումքի, էլեկտրաէներգիայի, վառելանյութի խնայողության համար։



2. Անընդհատ բարձրացնենք արտադրանքի որակը։

3. Սիստեմատիկաբար իջեցնենք արտադրանքի ինքնարժեքը, ձեռնարկությունը դարձնենք ավելի շահութաբեր։

4. Լիակատար կարողությամբ օգտագործենք ձեռնարկության մեքենաներն ու սարքավորումները և արտադրական տեղամասերը։

5. Արտադրության ռիթմիկ աշխատանքը լավագույն միջոց է պլանները ժամանակին կատարելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու գործում։

6. Արտադրության մեջ լայնորեն արմատավորենք գիտության նվաճումները և առաջավորների աշխատանքի դրական փորձը։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. Մալենկով— *Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, Հայպետհրատ, 1952 թ. էջ 43—56։*

Գ. Մ. Մալենկով— *Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, Հայպետհրատ, 1953 թ. էջ 5—28։*

Զ. Մ. Սաբուրով— *Զեկուցում պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների մասին ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, Հայպետհրատ, 1952 թ. էջ 7—25։*

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԿՈՐԵԱԿԱՆ ՀԱՐՑԻ ԱՐԴԱՐԱՑԻ ԼՈՒԾՄԱՆ ՀԱՄԱՐ

*1. Սովետական Միությունը կողմնակից է Կորեական հարցի խաղաղ կարգավորմանը, պաշտպանում է ժողովուրդների կոլեկտիվ անվտանգության շահերը։*

*2. Կորեական հարցում, ինչպես և մյուս միջազգային հարցերում, Սովետական Միությունը պաշտպանում է խաղաղության և ժողովուրդների ազատ զարգացման շահերը։*

*3. Սովետական Միության դիրքը Կորեական հարցում ելնում է այն բանից, որ ժամանակակից միջազգային հարաբերություններում ամեն մի վիճելի հարց, որքան էլ նա դժվարին լինի, պետք է լուծվի խաղաղ ճանապարհով։*

*4. Կորեական հարցը անհնար է կարգավորել առանց Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի։*

*5. ՍՍՌՄ-ն եղել է և մնում է Կորեական ժողովրդի դեմոկրատական այն ուժերի կողմում, որոնք ձգտում են Կորեայի շուտափույթ ազգային միավորմանը՝ որպես անկախ ու դեմոկրատական պետության։*

*6. ՍՍՌՄ-ն եղել է և մնում է Կորեայի և մյուս երկրների դեմոկրատական այն ուժերի կողմում, որոնք կողմնակից են նպաստելու Կորեայի խաղաղ զարգացման հետագա պայմանների ապահովմանը։*



## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Մ. Մոլոտովի *հայտարարությունը Արտաքին Գործերի Մինիստրների Ժնևի խորհրդակցությունում 1954 թվականի ապրիլի 29-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի մայիսի 1-ի համարում։*

Վ. Մ. Մոլոտովի *հայտարարությունը Ժնևի խորհրդակցությունում Կորեական հարցի մասին 1954 թվականի հունիսի 5-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հունիսի 6-ի համարում։*

Չժոու Էն-լայի *հայտարարությունը Կորեական հարցի վերաբերյալ 1954 թվականի հունիսի 15-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հունիսի 18-ի համարում։*

Նամ Իրի *հայտարարությունը Կորեական հարցի վերաբերյալ 1954 թվականի հունիսի 15-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հունիսի 18-ի համարում։*

Խմբագիր՝ Գր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП
Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 13 1954 г.

ՎՖ 11691 Պատվեր 585 Տիրաժ 7860

Գլխպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան
Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.: